Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


Հ Կ (Բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 4 (106)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ»
ԵՐԵՎԱՆ—1941

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

էջ





# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՔՍԱՆԵՐԵՔԵՐՈՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

## *ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ ԾՆՈՒՆԴՆ Է*

*1941 թվի փետրվարի 23-ին, սոցիալիզմի հաղթական երկրի 193 միլիոնանոց ժողովուրդը տոնելու է փառապանծ Կարմիր Բանակի 23-րդ տարեդարձը։*

*Կարմիր Բանակը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիայի ծնունդն է, այն ռևոլյուցիայի, որը խորտակեց մեր երկրում բուրժուազիայի ու կալվածատերերի իշխանությունը և իր առաջ դրեց բոլոր և ամեն տեսակի շահագործողների ու ճնշողների ոչնչացման վեհ նպատակը։*

*Մարքսը և Էնգելսը, Լենինն ու Ստալինը միշտ էլ սովորեցնում էին, որ աշխատավորներն իրենց ազատությունը կարող են*

ձեռք բերել միայն զենքը ձեռքին, զենքի ուժով։

Լենինը դեռ 1905 թ. գրում էր.

«Ռևոլյուցիոն բանակն անհրաժեշտ է, որովհետև պատմական մեծ խնդիրները կարող են լուծվել միմիայն ուժով, իսկ ուժի կազմակերպումը ժամանակակից պայքարում, դա ռազմական կազմակերպություն է»։ (Լենին, Ընտիր երկերի վեցհատորյակ, հատ. II, էջ՝ 320—321, Պետհրատ 1931 թ., հայերեն)։

Եվ, եթե առաջները մեր երկրի ռևոլյուցիոն պրոլետարիատն ստեղծում էր իր զինված ջոկատները բուրժուա-կալվածատիրական կարգերի դեմ պայքարելու համար, ապա իշխանության գրավումից հետո նրա առաջ հարց ծառացավ՝ ստեղծել հզոր ռևոլյուցիոն բանակ, սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար։

Հաղթական Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ Ռևոլյուցիան ողջ աշխարհի շահագործող դասակարգերի կողմից անզուսպ ատելությամբ և կատաղի չարությամբ ընդունվեց։ Բանվոր դասակարգի դիկտատուրան իր գոյության հենց առաջին օրերից ստիպված եղավ պաշտպանել իրեն ներքին և արտաքին թշնամիներից, որոնք փորձում



էին վերականգնել բուրժուազիայի և կալվածատերերի իշխանությունը և հանձնել մեր երկիրն օտարերկրյա իմպերիալիստների իշխանությանը։

Որպեսզի հակահարված տրվեր, պաշտպանվեր հայրենիքը և կռիվ մղվեր հանուն սովետների իշխանության, անհրաժեշտ էր, որ հին կարգերի հետ մեկտեղ քայքայված և ջլատված հին բանակի փոխարեն՝ ստեղծվեր սեփական բանակը, պրոլետարական պետության բանակը, այնպիսի մի բանակ, որը ծառայեր ոչ թե շահագործողների, այլ ժողովրդի— բանվորների և գյուղացիների շահերին և որը գոյություն ունենար ոչ թե աշխատավորների ստրկացման, այլ նրանց ազատագրման համար:

Լենինը 1918 թվի հունվարի 28-ին ստորագրեց Սովետական կառավարության դեկրետը՝ Բանվորագյուղացիական Կարմիր Բանակի ստեղծման մասին։ 1918 թվի փետրվարի 12-ին հրապարակվեց դեկրետ՝ Կարմիր Ռազմա-Ծովային Նավատորմի ստեղծման մասին։ Աշխատավորներն այս դեկրետները դիմավորեցին մեծ խանդավառությամբ։ Առաջին երկու ամիսներում կամավոր գնացին Կարմիր Բանակ ավելի քան 100.000 մարդ։ 1918 թ. փետրվարի 18-ին

ներխուժեց մեր հայրենիքի սահմաններն ավստրո-գերմանական իմպերիալիզմի 400.000-անոց բանակը։ Պետրոգրադին սպառնում էր վտանգ։ Մի քանի օրվա ընթացքում ստեղծվեցին Կարմիր Բանակի առաջնյակ նոր ջոկատներ։ Այդ հերոսական ջոկատները փետրվարի 23-ին Պսկովի և Նարվայի մոտ մղված մարտերում ջախջախիչ հարված հասցրին իմպերիալիստական գիշատիչներին և կասեցրին նրանց հարձակումը։ Դա փառապանծ օր էր։ Այդ օրվա մարտերում ծնվեց Կարմիր Բանակը։ Այդ օրը դարձավ Կարմիր Բանակի և ողջ սովետական ժողովրդի տրադիցիոն տոնի օրը։

Մեր պարտիայի առաջնորդները՝ Լենինը, Ստալինը, հեռատեսորեն զգացին սովետական պետության ներքին և արտաքին կոնտրռևոլյուցիայի դեմ մղվելիք զինված պայքարի վիթխարի մասշտաբները։ Նրանք օգտագործեցին բոլոր հնարավորությունները՝ Կարմիր Բանակը կազմակերպելու և ուժեղացնելու համար։

Շուտով սկսվեց իմպերիալիստական պետությունների՝ Անգլիայի, Ֆրանսիայի, Ճապոնիայի և Ամերիկայի զինված ինտերվենցիան։ Ներքին կոնտրռևոլյուցիայի և օ-



տարերկրյա ինտերվենտների միացյալ ուժերի կատաղի հարձակումներն անհրաժեշտ դարձրին ընդարձակել Կարմիր Բանակը։ 1918 թ. մայիսի 25-ին Համառուսաստանյան Կենտգործկոմը դեկրետ ընդունեց՝ Բանակը կամավորներից կազմելու սկզբունքից՝ պարտադիր զինվորական ծառայության անցնելու մասին։

Կարմիր Բանակն ամրապնդվեց, աճեց և կոփվեց քաղաքացիական կռիվների քուրայում։ Լենինի և Ստալինի կողմից ղեկավարվող Կարմիր Բանակը ջախջախեց իմպերիալիստական Անգլիայի, Ֆրանսիայի, Ամերիկայի Միացյալ Նահանգների, Ճապոնիայի, Գերմանիայի մեր երկիրը ներխուժած զորքերը։ Նա ջախջախեց Անտանտայի կամակատարներին— ցարական ծովակալ՝ Կոլչակին, որն իրեն «Ռուսաստանի գերագույն տնօրեն» էր հայտարարում, Յուդենիչի, Դենիկինի, Կրասնովի, Վրանգելի սպիտակ գեներալներին, ջախջախեց սպիտակ լեհերին։ Կարմիր Բանակը ոչնչացրեց կոնտրռևոլյուցիայի բոլոր օջախները և սովետական իշխանությունն ամրապնդվեց ողջ լայնատարած երկրի վրա։

Թշնամիները գերազանցում էին Կարմիր Բանակին և՛ քանակի, և՛ տեխնիկայի տե-

սակետից։ Կարմիր Բանակին պակասում էր և՛ զենք և՛ հագուստ և՛ սննդամթերք։ Այնուամենայնիվ, Կարմիր Բանակը հաղթող դուրս եկավ։ Նա հաղթեց, որովհետև նրան ղեկավարում էին աշխատավորների ազատագրման գաղափարները։ Նա հաղթեց, որովհետև նա պայքարում էր ժողովրդի շահերի և երջանկության համար, մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության համար։

Կարմիր Բանակը, դա՝ ազատագրված բանվորների և գյուղացիների բանակն է։ Նա ժողովրդի անբաժանելի մասնիկն է, սնվում է ժողովրդի սիրով, հոգատարությամբ. Նա մշտապես ստանում էր ժողովրդի օժանդակությունը և աջակցությունը։

«Կարմիր Բանակը հաղթեց այն պատճառով, որ նա հավատարիմ և մինչև վերջը նվիրված էր իր ժողովրդին, որի համար էլ ժողովուրդը սիրում և օգնություն էր ցույց տալիս նրան, որպես իր հարազատ բանակին» («ՀամԿ(բ)Պ պատմ. Համառոտ դասընթաց», էջ 330, Պետհրատ 1938 թ. հայերեն)։

Կարմիր Բանակին օժանդակեցին և աջակցեցին մեր երկրի բոլոր ազգությունների աշխատավորությունը, որովհետև Կար-



միր Բանակն ազատագրում էր նրանց՝ դարավոր շահագործման լծից, որովհետև Կարմիր Բանակն ի տարբերություն բոլոր այլ բանակների, դաստիարակվում է բոլոր ժողովուրդներին հարգելու ոգով, ինտերնացիոնալիզմի ոգով։

Կարմիր Բանակն ուներ ամուր և հուսալի թիկունք։ Լենինի-Ստալինի պարտիան ողջ ժողովրդին հայրենասիրական պատերազմի հանեց՝ օտարերկրյա հափշտակիչների և սպիտակ գեներալների դեմ։ Ողջ երկիրը վերածվեց ռազմական ճամբարի։ Բանվորները, գյուղացիները իրենց զրկում էին անգամ ամենաանհրաժեշտ բաներից, որպեսզի կարողանային զինել, կերակրել և հագցնել Կարմիր Բանակը։ Բանվորները մեծ խանդավառությամբ էին աշխատում կոմունիստական շաբաթօրյակների ժամանակ, որպեսզի տային բանակին զենք և զինամթերք։ Իրենց ամենալավագույն զավակներին նրանք հանձնում էին Կարմիր Բանակի շարքերը։ Իսկ երբ ճակատը մերձենում էր քաղաքներին, գյուղերին, ապա յուրաքանչյուր աշխատավոր դառնում էր կարմիր բանակային և հայրենիքի անձնվեր պաշտպան։

Սպիտակների թիկունքում՝ Սիբիրում,

Ուկրաինայում, Բելոռուսիայում, Հեռավոր Արևելքում, Ուրալում, ամենուրեք ծավալվում էր պարտիզանական շարժումը։ Օրինակ՝ Մերձ-Ամուրյան երկրամասում հազարավոր պարտիզաններ գործելով յապոնական օկուպացիոն զորքերի թիկունքում, լուրջ և ծանր հարվածներ էին հասցնում նրանց։ Ուսսուրական երկաթգծի վրա նրանք պայթեցնում էին կամուրջներ, գծից դուրս էին գցում զինվորական էշելոններ, զրահագնացքներ։

Կարմիր Բանակը վայելում էր միջազգային պրոլետարիատի համակրությունն ու աջակցությունը։ Անգլիայում, Ամերիկայի Միացյալ Նահանգներում և այլ երկրներում, ռևոլյուցիոն բանվորների նախաձեռնությամբ՝ «Ձեռքերդ հեռու սովետական Ռուսաստանից» նշանաբանի տակ՝ կազմակերպվում էին «Օգնության Կոմիտեներ»։ Անգլիական բանվորներն անմիջապես պահանջեցին անգլիական զորքերի ետ կանչումը մեր երկրից։ Ողջ Ֆրանսիայում մեկ ի պաշտպանություն Սովետական Ռեսպուբլիկայի, գործադուլային շարժման հզոր ալիք ծավալվեց։ Իսկ Սև Ծովում գտնվող ֆրանսիական նավերի վրա անվերջ ապըստամբություններ էին բռնկվում։ Շատ նա-



վահանգիստներում բանվորները հրաժարվում էին բեռնել այն զինամթերքները, որոնք պետք է օգտագործվեին Սովետների երկրի դեմ մղվող կռիվներում։ «Հենց որ ,—ասում էր Լենինը,— միջազգային բուրժուազիան ձեռք է բարձրացնում մեզ վրա։ նրա ձեռքը բռնում են նրա սեփական բանվորները»։ (Ленин. Соч. том XXV, стр. 405, ռուսերեն)։

Կարմիր Բանակի հաղթանակը հնարավոր դարձավ շնորհիվ բոլշևիկյան պարտիայի և անձամբ Լենինի-Ստալինի ղեկավարության։ Լենինի-Ստալինի պարտիան ղեկավար ուժ էր հանդիսանում ոչ միայն ճակատում, այլև թիկունքում։ Նա կազմակերպում էր միլիոնավոր մասսաներին և միջազգային բարդ իրադրության պայմաններում վարում էր միակ ճիշտ քաղաքականությունը։ Նա տվեց Կարմիր Բանակին ռազմական կոմիսարներ, որոնք վճռական դեր խաղացին Կարմիր Բանակի ամրապնդման գործում, նրա հաղթանակների ձեռք բերման գործում։ 300.000 կոմունիստներ կամ պարտիայի ընդհանուր թվի 65 տոկոսը գտնվում էին Կարմիր Բանակում և ռևոլյուցիոն արիության, մարտական հերոսության ու անձնազոհության վառ

օրինակներ էին ցուցաբերում։

Լենինի-Ստալինի ղեկավարությամբ, Կարմիր Բանակը կոփեց իր շարքերում նոր տիպի այնպիսի ռազմական ղեկավարներ, ինչպիսիք էին Ֆրունզեն, Վորոշիլովը, Տիմոշենկոն, Բուդյոննին, Կիրովը, Օրջոնիկիձեն, Կույբիշևը և ուրիշները։ Կարմիր Բանակի ընդերքում աճեցին այնպիսի փառապանծ ժողովրդական ինքնածին-հերոսներ, ինչպիսիք էին՝ Չապաևը, Շչորսը, Կոտովսկին, Լազոն, Պարխոմենկոն և ուրիշները։

Մեծ Լենինը ոչ միայն Կարմիր Բանակի գաղափարական ոգեշնչողն էր ու նրա ստեղծողը, այլև նա հանդիսանում էր նրա գերագույն ղեկավարը։ Լենինն իր ձեռքերում էր պահում Կարմիր Բանակի ղեկավարության բոլոր թելերը, սկսած Կարմիր Բանակի կազմակերպումից, քաղաքական լուսավորումից, մատակարարումից, վերջացրած նրա կարևոր մարտական գործողությունների ղեկավարությամբ։

Այդ դժվար տարիներին կարևորագույն դերը կատարեց Լենինի հանճարեղ բարեկամ և զինակից ընկեր Ստալինը։

Ընկեր Վորոշիլովը, Ստալինի մերձավորագույն օգնականը քաղաքացիական պատե-



րազմների ճակատում, բնութագրելով ընկեր Ստալինի դերը Կարմիր Բանակի կառուցման և նրա ձեռք բերած հաղթանակների գործում, ասում է.

«Չի կարելի անջատել սովետական պետության զինված ուժերի պատմությունը և շինարարությունը Ստալինից։ Չի կարելի խոսել և գրել Ստալինի մասին՝ առանց խոսելու և գրելու Կարմիր Բանակի հերոսական պատմության և հերոսական մարտերի մասին, ճիշտ այնպես, ինչպես չի կարելի խոսել և գրել Կարմիր Բանակի մասին՝ առանց խոսելու և գրելու Ստալինի մասին, որը սերտորեն համագործակցելով Լենինի հետ՝ կոփում էր Կարմիր Բանակի հիմքերը դեռ նրա սաղմնավորման օրորանի մոտ»։ («Պարտաշխատող» ամսագիր, 1940 թ. № 1, էջ 21, հայերեն)։

Քաղաքացիական պատերազմի տարիներին, Ստալինը միշտ գտնվում էր այնտեղ, որտեղ սպառնում էր ամենամեծ վտանգը, որտեղ անհրաժեշտ էր հաստատակամ, բոլշևիկյան ղեկավարություն։

Եվ այնտեղ, ուր լինում էր Ստալինը, Կարմիր Բանակը մշտապես հաղթում էր։

## ԼԵՆԻՆԻ-ՍՏԱԼԻՆԻ ՊԱՐՏԻԱՆ ԱՆԴՈՒԼ ԿԵՐՊՈՎ ԲԱՐՁՐԱՑՆՈՒՄ Է ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՀԶՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Լենինը, Ստալինը բազմիցս անգամ են նշել, որ քանի ՍՍՌՄ գտնվում է կապիտալիստական շրջապատման մեջ, այս. մենք ապահովված չենք իմպերիալիստների նոր ռազմական հարձակման վտանգից՝ մեր երկրի վրա։

Լենինի դամբանի մոտ ընկեր Ստալինը պարտիայի և ժողովրդի անունից մեծ երդում տվեց՝ պայքարել հանուն Կարմիր Բանակի և Կարմիր Ռազմա-Ծովային նավատորմի ամրապնդման։ Նա ասաց.

«Լենինը մեզ շատ անգամ է ասել, թե կապիտալիստական պետություններից մեր նվաճած ժամանակավոր դադարը կարող է կարճատև լինել։

Լենինը մեզ շատ անգամ է մատնանշել, որ Կարմիր Բանակի ամրացումը և նրա դրության լավացումը մեր պարտիայի կարևորագույն խնդիրներից մեկն է... Արդ երդվենք, ընկերնե՛ր, որ մենք ուժերս չենք խնայի, որպեսզի ամրացնենք մեր Կարմիր Բանակը, մեր Կարմիր Նավատորմը»։ (Ի. Ստալին— Լենինի մասին, էջ՝ 26—27.



Պարտհրատ, 1936, առանձին թողարկում, հայերեն)։

Շնորհիվ պարտիայի, կառավարության և անձամբ ընկեր Ստալինի անդուլ հոգատարության և էներգիայի, մեր երկիրը կարճ ժամկետում վերջ տվեց իր ռազմական հետամնացությանը և այժմ նա արդեն ունի հզոր Կարմիր Բանակ և Կարմիր Ռազմա-Ծովային նավատորմից, որոնք հագեցված են ամենակատարելագործված ռազմական տեխնիկայով։

Կարմիր Բանակի հզորությունը հենվում է մեր սոցիալիստական ինդուստրիայի հզորության վրա, այն ինդուստրիայի, որն ստեղծված է Ստալինյան հնգամյակների տարիներին։

Տարեց-տարի աճում է Կարմիր Բանակի մեխանիկական հզորությունը։ 1925 թվին մեկ կարմիրբանակայինի ընկնում էր 2,6 ձիու ուժ, 1934 թ. 7,74 ձիու ուժ, իսկ 1935 թ. 13 ձիու ուժ, այսինքն՝ 10 տարվա ընթացքում տեղի է ունեցել աճ 400 տոկոսով. և այս ամենը դեռ բանակի զգալի թվական աճի դեպքում։

Հրետանին, այդ նույն տաս տարիների ընթացքում աճել է 7 անգամ, տանկերի

քանակը՝ 43 անգամ, ավիացիան՝ 6,5 անգամ:

Կարմիր Բանակը հզոր է ոչ միայն իր տեխնիկայով: «Կարմիր Բանակի և Կարմիր Նավատորմիղի ուժն ու մարտական հզորությունը,— ասում է ընկեր Վորոշիլովը,— կայանում է ոչ միայն և անգամ ոչ այնքան նրա զինվածության և յուրահատուկ տեխնիկայի մեջ, ինչքան սովետական մարդկանց մեջ, բանակի կադրերի մեջ, հրամանատարների, հրամկազմի և քաղաքական կազմի ու շարքային մարտիկների մեջ»:

Լենին-Ստալինի պարտիան՝ Կարմիր Բանակի մարտիկների և հրամանատարների մեջ, ինչպես և ողջ ժողովրդի մեջ դաստիարակում է մարտական ոգի, համարձակություն, զենքը ձեռքին՝ հանուն հայրենիքի անձնվիրաբար կռվելու պատրաստակամություն, դաժանություն՝ հանդեպ կոմունիզմի թշնամիները:

Բոլշևիկներին խորթ է մանր բուրժուաների «արտասվալից» պացիֆիզմը, որոնք երևակայում են, թե իբր կարելի է համոզել իմպերիալիստական գիշատիչներին՝ հրաժարվել պատերազմներ մղելուց:

Առաջին իմպերիալիստական պատերազմի ժամանակ Լենինը գրում էր. «Եթե ներ-



կա պատերազմը, ռեակցիոն քրիստոնեական սոցիալիստների, լացկան մանր բուրժուաների մոտ առաջացնում է միայն սարսափ և վախ, միայն զարշանք՝ զենքի յուրաքանչյուր գործածման նկատմամբ,, արյան, մահվան և այլնի նկատմամբ, ապա մենք պետք է ասենք— կապիտալիստական հասարակությունը կար, և միշտ էլ հանդիսանում է սարսափ առանց վերջի: Եվ եթե այժմ այդ հասարակության համար պատերազմներից իսկական ամենառեակցիոնը պատրաստում է վերջ՝ սարսափով, ապա մենք ոչ մի հիմք չունենք հուսահատության մեջ ընկնելու»: (Ленин. Соч. т. XIX, стр. 316, ռուսերեն):

Լենինը բազմիցս է մատնանշել, որ պատերազմները կապիտալիզմի անխուսափելի ուղեկիցներն են: Նրանք առաջ են եկել մասնավոր սեփականության, դասակարգերի, շահագործման առաջ գալու հետ մեկտեղ և կվերանան միայն այն ժամանակ, երբ արմատապես կոչնչացվի նրանց աղբյուրը, այսինքն՝ շահագործող դասակարգերը և նրանց պետությունը:

Բոլշևիկները հանդիսանում են հաշտվողական իմպերիալիստական պատերազմների հակառակորդները, սակայն նրանք

պաշտպանել և պաշտպանում են արդարացի, ոչ-հափշտակողական ազատագրական պատերազմները։ Նրանք կողմնակից են բոլոր այն պատերազմներին, որոնք նպատակ ունեն կամ պաշտպանել ժողովրդին արտաքին հարձակումից և նրան ստրկացնելու փորձերից, կամ ազատել ժողովրդին կապիտալիզմի ստրկությունից և կամ վերջապես, ազատել գաղութներն ու կախյալ երկրներն իմպերիալիստների լծից։

Այս գաղափարների ոգով Բոլշևիկների պարտիան դաստիարակել և դաստիարակում է Կարմիր Բանակը։

Կարմիր Բանակի մարտիկները և հրամանատարները հպարտանում ու թանկ են գնահատում իրենց զինվորական պատիվը, Կարմիր Բանակի ռազմական տրադիցիաները։ Նրանք պահպանում և շարունակում են քաղաքական պատերազմի տրադիցիաները։ Նրանք պահպանում և շարունակում են իրենց նախորդների— Սևաստոպոլի պաշտպանության, 1812 թվի Հայրենական պատերազմի և արտաքին թշնամիների դեմ մղված այլ փառավոր կռիվների տրադիցիաները։

Մեր ժողովրդի, մեր բանակի ռազմական տրադիցիաները և հայրենասիրությունն ի-



րենց փառավոր արտահայտությունը գտան Կարմիր Բանակի նաև վերջին տարիներում ունեցած հաղթանակների և քաջագործությունների մեջ։

1938 թվի ամռանը Յապոնիայի ռազմաֆեոդալական կլիկը, որը փորձում էր խլել Հեռավոր Արևելքում մեր սրբազան հողից մի կտոր, Խասան լճի մոտ տեղի ունեցած մարտերում դաժանորեն պարտվեց։ Այդ կռիվներում Առաջին Կարմրադրոշ Բանակը փառքով պսակեց իր մարտական դրոշակները։ 1939 թ. մարտին յապոնական ռազմամոլները հարձակվեցին Խալխին-Գոլ գետի մոտ մեր բարեկամ մոնղոլական ժողովրդա-ռևոլյուցիոն բանակի սահմանապահ ջոկատների վրա։ Կարմիր Բանակը պաշտպանեց Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկայի սահմանները նույնպիսի վճռողականությամբ, ինչպես իր հայրենիքի սահմանները։

1939 թվի օգոստոսի վերջին յապոնական կայսերական բանակի երկու ընտրյալ դիվիզիաները լիովին ոչնչացվեցին. վերցվեցին շատ գերիներ և ռազմական ավարներ։ Այդ հաղթական պատերազմում Կարմիր Բանակը կոփվեց և ձեռք բերեց նոր և հարուստ փորձ։

Երբ լեհական պետության — Վերսալի այդ այլանդակ զավակի — կառավարությունը և գեներալները խայտառակությամբ փախան, թողնելով երկիրը և բանակը բախտի քմահաճույքին, սովետական կառավարությունը եղբայրության ձեռք մեկնեց մեր եղբայրներին — արևմտյան ուկրաինացիներին և արևմտյան բելոռուսներին։

1939 թ. սեպտեմբերի 17-ին սովետական կառավարության հրամանով, Կարմիր Բանակն անցավ նախկին լեհական պետության սահմանները։ Կարմիր Բանակը հաղթահարելով բոլոր դժվարությունները և արգելակները, կատարեց իր ազատագրական դերը — խլեց կապիտալիստական գերությունից 13 միլիոն աշխատավորներին։

Ֆիննական սպիտակ-գվարդիականները, որոնք միջազգային իմպերիալիզմի գործիքն էին հանդիսանում, տասնյակ տարիների ընթացքում պատրաստվում էին մեր դեմ կոնտրռևոլյուցիոն պատերազմ մղելու համար։ Ֆիննական կառավարության վերջին ժամանակների լկտի վարմունքը՝ սովետական կառավարության հետ Լենինի փառապանծ քաղաքի անվտանգության վերաբերվող բանակցությունների ժամանակ, այնուհետև բանակցությունների խզումը Ֆինն սպի-



տակ-գվարդիականության կողմից և, վերջապես, 1939 թվի նոյեմբերի 26-ին մեր սահմանապահ մասերի վրա կատարված պրովոկացիոն հրետանային կրակոցը, այս ամենը լցրին համբերության բաժակը։

1939 թվի նոյեմբերի 30-ին Լենինգրադի ռազմական օկրուգի զորամասերը կատարելով ՍՍՌՄ կառավարության հրամանը, անցան ֆիննական սահմանը։ Ոչինչ չէր կարող կասեցնել հերոսական Կարմիր Բանակին։ Լուծվեցին և մերկացվեցին ֆիննական սպիտակ-գվարդիականների բոլոր ֆոկուսները և դավերը։ Չօգնեց նրանց նաև միջազգային իմպերիալիզմի հսկայական օգնությունը։ Կարմիր Բանակը ջախջախեց «Մաններհեյմի գծի» բոլոր ամրությունները, այդպիսով կատարելով մի քաջագործություն, որին հավասարը պատմությունը չգիտե և որն ապահովեց մեր հայրենիքի հյուսիս-արևմտյան սահմաններն ու Լենինի քաղաքի անվտանգությունը։

## ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԸ ՍԻՍՏԵՄԱՏԻԿԱԲԱՐ ԿԱՏԱՐԵԼԱԳՈՐԾՈՒՄ Է ԻՐ ՄԱՐՏԱԿԱՆ ՎԱՐԺՎԱԾՈՒԹՅՈՒՆԸ

Պաշտպանության ժողովրդական Կոմիսար, Սովետական Միության Հերոս և մարշալ ընկեր Տիմոշենկոն իր 1940 թ. նոյեմ-

բերի 7-ի հրամանում հայտարարեց. «Ինչքան էլ մեծ լինեն մեր նվաճումները, այդ մենք — Կարմիր Բանակի մարտիկներս — չենք, որ պիտի հպարտանանք և հանգստանանք ձեռք բերածով»։

Մենք չպետք է փակենք մեր աչքերն այն բանի վրա, որ ապագա պատերազմում մենք ընդհարվելու ենք այնպիսի հակառակորդի հետ, որն ուժեղ է, խորամանկ, տեխնիկապես հիանալի հագեցված և ունի տակտիկական բարձր պատրաստականություն։ Որպեսզի ջախջախենք թշնամուն «սակավ արյունով» անհրաժեշտ է ետ չմնալ կյանքից։

Անհրաժեշտ է մանրակրկիտ կերպով ուսումնասիրել և կատարելությամբ օգտագործել ժամանակակից պատերազմների փորձը։

Ժամանակակից պատերազմներում օգտագործվում են էլ ավելի չտեսնված մասշտաբներով հզոր մեխանիզմներ և արագակրակ հրաձգության միջոցներ։ Ռազմական գործողություններին միաժամանակ մասնակցում են և՛ հետևակ (այդ թվում՝ մեքենայացված), և՛ հրետանի, և՛ ավիացիա, և՛ տանկեր, և՛ հեծելազոր և՛ օդային դեսանտի զորամասեր։ Նրանց միջև պահպանվում



է փոխադարձ գործողությունների սկզբունքը։ Այս ամենը փոխում և բարդացնում են պատերազմ մղելու ձևերն ու մեթոդները, փոխում են ռազմական գործողությունների ղեկավարության ձևերն ու մեթոդները։

Ներկայումս Կարմիր Բանակի ողջ անձնակազմը մանրակրկիտ կերպով ուսումնասիրում է ժամանակակից պատերազմների փորձը և կատարելագործում իրենց գիտությունները, լավ հիշելով ընկեր Ստալինի ցուցմունքը, թե «Համարձակությունը և քաջագործությունը — դա հերոսության միայն մեկ կողմն է։ Մյուս կողմը, ոչ պակաս կարևորը, դա՝ կարողանալն է։ Սակայն այս՝ արդեն այն դեպքում, երբ համարձակությունը, քաջագործությունը, ռիսկ անելու պատրաստակամությունը զուգակցվում է գերազանց գիտելիքների հետ»։

Հրետանու և ավիացիայի ժամանակակից ամբակոծությունը հսկայական թվով տանկերի հզոր հրետանային կրակի գործողության հետ միաժամանակ պահանջում է, որպեսզի մեր մարտիկներն ունենան ամուր նյարդեր, բարձր մարտական ոգի, բոլշևիկյան տոկունություն, կայունություն, դիմացկունություն։

«Ժամանակակից պատերազմը շատ բարդ

գործ է,— ասում է ընկեր Տիմոշենկոն,— նա պահանջում է յուրաքանչյուր մարտիկից և հրամանատարից նրա ուժերի և ընդունակությունների ծայրագույն լարվածություն։ Կռիվները տեղի են ունենալու տարվա յուրաքանչյուր եղանակին — և՛ բարկ ամռանը, և՛ դաժան ձմռանը, և՛ գիշերը, և՛ ցերեկը։ Կռվի հաջողությունն զգալի չափով կախում կունենա ոչ միայն լավ ռազմական տեխնիկայից, այլև հենց իրենց՝ մարտիկների կարող և ձեռներեց գործողություններից, նրանց ֆիզիկական կոփվածությունից և դիմացկունությունից, այն բանից, թե ինչքան նրանք սովորեցված կլինեն, վարժված կլինեն՝ երկար ժամանակ դիմանալու ռազմական իրադրության դաժան պայմաններին»։

Պարտիայի, կառավարության և անձամբ ընկեր Ստալինի ցուցումների համապատասխան, Կարմիր Բանակը Պաշտպանության ժողկոմ ընկեր Տիմոշենկոյի ղեկավարությամբ, կատարում է զորքի մարտական պատրաստականության և դաստիարակության բնույթի ու մեթոդների վերակառուցման աշխատանքը։

Ժողկոմը պահանջում է վարժությունների մաքսիմալ մոտեցումը մարտական իրա-



դրությանը, որպեսզի բանակայինները սովորեն գործել և՛ գիշերը, և՛ ցերեկը, ամեն տեսակի եղանակի ժամանակ, դիմանալ երկարատև ֆիզիկական լարվածության, ճարպկորեն մանևրել ամեն տեսակ տեղանքում, հաղթահարելով արհեստական և բնական բոլոր արգելքները, արագ կերպով կարողանան փորել և մտնել հողի մեջ և վանել թշնամու հանկարծակի հարձակումները... Հակագործել շրջապատմանը՝ մանրազննին հետախուզությամբ, թիկունքն անցնող թշնամուն՝ թիկունքից ու ճակատից վճռական ուժեղ հարվածներ հասցնելու միջոցով՝ ճարպկորեն դուրս պրծնել շրջապատումից ու իրենք շրջապատել թշնամուն»։

Այս ցուցմունքներն այժմ Կարմիր Բանակի համար ծառայում են, որպես մարտական ծրագիր։

Սովորելու և կռիվների մեջ հաղթություններ ունենալու հիմնական պայմանը, դա՝ խստագույն ռազմական կարգապահությունն է։ Ոչ մի բանակ չի կարող գոյություն ունենալ առանց կարգապահության։ «Առանց կարգապահության զորքը վերածվում է խառնիճաղանճ ամբոխի»— ասում է ընկեր Ստալինը։ Որքան ավելի է կարգապահ զո-

բամասը, այնքան նրան դյուրին կլինի կռվել, այնքան նա նվազ կորուստներ կունենա կռվի ընթացքում։

Կապիտալիստական երկրներում կարգապահությունը հիմնված է զինվորներին սպաների կողմից դասակարգային հլության և ճնշման մեջ պահելու վրա։

Մտրակային կարգապահության միջոցով բուրժուազիան ձգտում է վարժեցնել զինվորներին, որպեսզի նրանք կուրորեն ենթարկվեն սպաներին և կռվեն՝ իրենց խորթ տիրող դասակարգերի շահերի համար։

Կարմիր Բանակի կարգապահությունը կառուցվում է բոլորովին այլ հիմունքների վրա, և հետապնդում է բոլորովին այլ նպատակներ։

Կարմիր բանակի և՛ մարտիկները, և՛ հրամանատարները աշխատավոր ժողովրդի զավակներն են։ Նրանց շահերն ընդհանուր են։ Այդ շահերը՝ ողջ սովետական ժողովրդի, սոցիալիստական հայրենիքի շահերն են։ Կարմիր Բանակը տարբերվում է աշխարհի բոլոր բանակներից իր կուլտուրականությամբ, նրա անձնական կազմի բարձր քաղաքական գիտակցությամբ, նրա՝ հայրենիքին մինչև վերջը նվիրվածությամբ։ Հենց այդ պատճառով էլ կարգապահությունը



Կարմիր Բանակում ավելի բարձր է, խըստապահանջ և ամուր։

Կարմիր Բանակի Նոր Կարգապահական Կանոնադրության մեջ, որը մտցված է 1940 թ. նոյեմբերին, ասված է. «Սովետական ռազմական կարգապահությունը հիմնված է Կարմիր Բանակի ողջ անձնական կազմի դասակարգային շահերի միօրինակության վրա, նրա՝ իր ժողովրդին անսահմանորեն նվիրվածության վրա և յուրաքանչյուր զինծառայողի այն բարձր պատասխանատվության զգացմունքի վրա, որը նա զգում է իրեն հանձնված սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության գործի նկատմամբ։ Այդ պատճառով էլ Կարմիր Բանակի կարգապահությունը պետք է լինի ավելի բարձր, ամուր, տարբերվի իր ավելի դաժան, ավելի խիստ պահանջներով, քան ուրիշ բանակների դասակարգային հլության վրա հիմնված կարգապահությունը»։

Նոր Կարգապահական Կանոնադրությունը տալիս է Կարմիր Բանակի հրամանատարներին լիակատար միիշխանություն, բարձրացնում է նրանց պատասխանատվությունը։

Ռազմական դիսցիպլինայի ամրապընդ-

մանն աջակցում է նաև Կարմիր Բանակում գոյություն ունեցող դաստիարակչական աշխատանքի սիստեմը։ Կարգապահության այն խախտողների նկատմամբ, որոնք կարող են գտնվել Կարմիր Բանակի շարքերում, հայրենիքի պաշտպանության շահերից ելնելով կիրառում են ստիպողական ամենախիստ միջոցները։

Կարմիր Բանակը պահանջում է, որպեսզի նրա մարտիկները և հրամանատարներն անշեղորեն կատարեն Ռազմական Կանոնադրությունը, հրամանատարների հրամանները և կարգադրությունները, որպեսզի նրանք ազնվորեն կատարեն իրենց սրբազան ռազմական պարտքը, որպեսզի նրանք լինեն համարձակ, կայուն, ազնիվ և ճշմարտասեր, որպեսզի նրանք արժանի լինեն իրենց մեծ հայրենիքին, իրենց պատմական մեծ խնդիրներին։

Մ. Ի. Կալինինն, իր, Կարմիր Բանակի և Կարմիր Ռազմա-Ծովային նավատորմիղի քաղ. աշխատողների դերի ու խնդիրների մասին, 1940 թ. սեպտեմբերին արտասանած ճառի մեջ ասաց.

«Կարմիր բանակայինները և կարմիր նավաստիները հանդիսանում են ոչ միայն պարզապես հսկայական բանակի և հսկա-



յական նավատորմիղի պարզապես մարտիկներ, այլ պատմության մեջ ամենառևոլյուցիոն բանակի և պատմության մեջ ամենառևոլյուցիոն նավատորմիղի մարտիկներ... Նրանք այժմ իրագործում են այն խնդիրները, որոնց իրագործում էին մեր ռևոլյուցիոններները 2—3—4 տասնյակ տարիներ առաջ, և դեռ էլ ավելի առաջ՝ Դոբրոլյուբովը, Չերնիշևսկին, այսինքն՝ բոլոր առաջավոր, լավագույն ռուս մարդիկ, որոնք պայքարում էին հանուն ազատության։

Սակայն այն ժամանակ նրանք պայքարում էին քննադատությամբ։ Իսկ այժմ մեր ռևոլյուցիոն մարտիկը, դա՝ քննադատ է հրացանը ձեռքին. և այս մարդը գտնվում է ամենապատասխանատու պոստի վրա»։

## ԷԼ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՄԵՐ ԵՐԿՐԻ ՊԱՇՏՊԱՆԱԿԱՆ ՀԶՈՐՈՒԹՅՈՒՆԸ

Սովետական ժողովուրդը Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային նավատորմիղի 23-րդ տարեդարձը տոնում է այն օրերին, երբ կապիտալիստական աշխարհը բռնկված է երկրորդ իմպերիալիստական պատերազմի բոցով։ Դեռ երբեք միջազգային

իրադրություն այդպես բարդ, անապահովություններով հղի չի եղել, ինչպես այժմ։ Մեր երկրին սպառնացող ռազմական վտանգը գնալով աճում է։

Ընկեր Ստալինը մեր պարտիայի 18-րդ համագումարում ասաց.

«Մենք կողմնակից ենք խաղաղության և գործարար կապերի ամրապնդման բոլոր երկրների հետ, մենք կանգնած ենք և կանգնած կլինենք այդ դիրքի վրա, քանի այդ երկրները նույնպիսի հարաբերություններ կպահպանեն Սովետական Միության հետ, քանի նրանք չեն փորձի խախտել մեր երկրի շահերը» («Լենինիզմի հարցերը», 1940 թ. էջ 698, հայերեն)։

Սովետական Միությունը հենվելով իր տնտեսական և պաշտպանական հզորության վրա, վարում է իր սեփական քաղաքականությունը, ելնելով միայն մեր սովետական պետության շահերից։ Սովետական Միությունը վարում է խաղաղության քաղաքականություն և չեզոքություն է պահպանում։ Սակայն, մենք չենք կարող հարևանցիորեն նայել այն բանի վրա, թե ի՞նչ է կատարվում մեր երկրի սահմաններից դուրս։ Մենք պետք է լինենք աչալուրջ և պատրաստ յուրաքանչյուր րոպե, ամեն տեսակի պատահականության և անսպասելիության դի-



մավորելու, մենք պետք է լինենք լիակատար ռազմական պատրաստականության մեջ, որպեսզի ապահովենք մեր հայրենիքի վրա հարձակման փորձ կատարող յուրաքանչյուր թշնամու դաժան ջախջախումը։

Մենք անցել ենք գլխավոր կապիտալիստական երկրներից արտադրության տեխնիկայի տեսակետից։ Սակայն մենք համառորեն պետք է առաջ ընթանանք, որպեսզի հասնենք և անցնենք նրանց նաև տնտեսապես։ Մենք պարտավոր ենք մեր տեխնիկան առաջ տանել և է՛լ ավելի զարգացնել։

Երկրորդ իմպերիալիստական պատերազմը և սպառազինման մրցավազքն արագացրել են կապիտալիստական երկրների տեխնիկայի զարգացման տեմպերը։ Սոցիալիզմի երկիրը չի կարող և չպետք է տեխնիկայի զարգացման մեջ ետ մնա նրանցից։ Մենք չենք կարող և չպետք է հանգստանանք ձեռք բերածով, որովհետև այսօրվա ձեռք բերածը, վաղը կարող է դադարել գոհացուցիչ լինելուց։

«Կանգնել մի տեղում չի կարելի պատմության մեջ ընդհանրապես, պատերազմի ժամանակ՝ մասնավորապես» — ասում էր Լենինը։ Լենինը սովորեցնում էր պայքարել

ինքնահանգստացման դեմ, չհոխորտալ ձեռք բերածով, չհանգստանալ հաղթանակներով։ Նույն բանն է սովորեցնում մեզ նաև ընկեր Ստալինը։

Լենինն առաջին իմպերիալիստական պատերազմի կապակցությամբ ասում էր.

«Չէ՞ որ պատերազմը շատ բան սովորեցրեց. ո՛չ միայն այն, որ մարդիկ տառապում էին, այլև այն, որ հաղթում է նա, ով ունի բարձրագույն տեխնիկա, կազմակերպվածություն, կարգապահություն և լավագույն մեքենաներ»։ (Լենին, Երկեր, հատ. XXII, էջ՝ 524, Պետհրատ, 1932, հայերեն)։

Այդ բանը մենք բոլորս պարտավոր ենք հաստատ կերպով հիշել։

Մեր երկրի ռազմական հզորության ամրապնդման խնդիրները պետք է մեզ համար լինեն ամենաառաջին պլանում։ Այդ խնդիրներին պետք է ենթարկվեն մեր բոլոր մնացած աշխատանքները։ Ամենից շատ այժմ, քան երբևիցե մեզ անհրաժեշտ է կարգապահություն, միաձուլություն, աշխատանքի մեջ ճշտություն, պահանջկոտություն մեր և ուրիշների հանդեպ։

Ողջ սովետական ժողովուրդը պետք է անձնվիրաբար աշխատի, ոչ մի ջոհի առջև չկանգնելով, որպեսզի սխտեմատի-



կաբար մատակարարի Կարմիր Բանակին և Ռազմա-Ծովային նավատորմղին բարձրորակ սպառազինությամբ, այնպիսի սպառազինությամբ, որը համապատասխանի համաշխարհային տեխնիկայի վերջին խոսքին, որպեսզի պատերազմի դեպքում, հնարավոր լինի ստեղծել անհրաժեշտ ռեզերվներ։

Մեր հայրենիքի յուրաքանչյուր քաղաքացի պետք է հիշի, որ հայրենիքի պաշտպանության գործը, դա ոչ միայն Կարմիր Բանակի գործն է, այլև ողջ Սովետական ժողովրդի։

«Հայրենիքի պաշտպանությունը ՍՍՌՄ յուրաքանչյուր քաղաքացու սրբազան պարտքն է»— գրված է Ստալինյան Կոնստիտուցիայում։

Ռազմական վտանգի ուժեղացումը թելադրում է մեր երկրի բոլոր քաղաքացիներին՝ գոնե տարրական ռազմական գիտելիքներին տիրապետելու անհրաժեշտությունը։

Անհրաժեշտ է Պաշը-ավիաքիմի, Կարմիր Խաչի կազմակերպությունները և մեր սպորտ կամավոր ընկերությունները վերածել երկրի պաշտպանունակության բարձրացման կարևոր գործոնների, Կարմիր

բանակի համար կադրեր պատրաստող հզոր աղբյուրի։ Մեր երիտասարդությունը պետք է դեռ մինչև բանակ կանչվելն ուսումնասիրի ռազմական գործը, կոփի իր օրգանիզմը, վարժվի դիսցիպլինային, ճըշտապահության, կազմակերպվածության, դժվարությունները և խոչընդոտները հաղթահարելուն։ Այս ամենին անհրաժեշտ է ընտելանալ դեռ փոքր հասակից։ Կոմունիզմի ապագա մարտիկները և հայրենիքի պաշտպանները պետք է լինեն երկաթե կամքով մարդիկ, բարձր գիտակցականությամբ, կուլտուրականությամբ և ֆիզիկական տոկունությամբ։

Սովետական ժողովուրդը Կարմիր Բանակի 23-րդ տարեդարձը պետք է տոնի պաշտպանական աշխատանքի է՛լ ավելի ուժեղացման պայմաններում։ Մեծ դեր պետք է խաղան, համարյա տարեդարձի հետ մեկտեղ անցկացվող, համաքանակային, կոմսոմոլական և պրոֆմիութենական դաշտային կրոսսները, որոնք հանդիսանում են կոմսոմոլի և պրոֆմիության ռազմ-ֆիզկուլտ աշխատանքի զորատեսը։ Այս կրոսսներն է՛լ ավելի են ընդգծում Կարմիր Բանակի և սովետական ժողովրդի անխզելի կապը։ Բարոյական, քաղաքական միաս-



նության ուժեղացման հիման վրա, ժողովրդի կապը մեր բանակի հետ և նրա սերը հանդեպ բանակն էլ ավելի է ամրացել։ Դա նշանակում է, որ «...Պատերազմի դեպքում մեր բանակի թիկունքը և ճակատը, իրենց միաձուլության և ներքին միասնության հետևանքով, կլինեն շատ ավելի ամուր, քան որևէ այլ երկրում» (Ստալին)։

Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմղի 23-րդ տարեդարձի տոնակատարումը պետք է անցնի սովետական ժողովրդի արտադրական և քաղաքական այն հզոր վերելքի պայմաններում, որն առաջացել է մեր պարտիայի 18-րդ Համամիութենական կոնֆերանսի գումարման կապակցությամբ։ Կոնֆերանսի որոշումներով զինված, սովետական ժողովուրդն է՛լ ավելի ակտիվ կերպով, է՛լ ավելի համառորեն կպայքարի մեր սոցիալիստական հայրենիքի տնտեսական և պաշտպանական հզորության ամրացման համար, մոբիլիզացիոն պատրաստականության բարձրացման համար «...Որպեսզի ոչ մի «պատա-

հականությունն» և մեր արտաքին թշնամիների ոչ մի ֆոկուսը չկարողանան մեզ հանկարծակիի բերել...» (Ստալին— ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը, Պարտհրատ, 1938 թ., էջ 31 հայերեն)։

---



# ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ՑՈՒՑԱԿ՝ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ 23-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ՄԱՍԻՆ ԶԵԿՈՒՑՈՒՄՆԵՐ ԱՆՑԿԱՑՆԵԼՈՒ ՀԱՄԱՐ

«Համամիութենական Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի պատմություն. Համառոտ դասընթաց»— գլուխ 8։ Քաղ. հրատ., 1938 թ., հայերեն)։

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության։ Ժողովածու, Գոսպոլիտիզդատ, 1939 (ռուսերեն)։

Վ. Ի. ԼԵՆԻՆ Ընկեր բանվորներ, գնանք վերջին և վճռական մարտի։ Երկեր, հատոր 23 (ռուսերեն)։

Վ. Ի. ԼԵՆԻՆ Նամակ բանվորներին և գյուղացիներին, Կոլչակի վրա ունեցած հաղթության կապակցությամբ։ Երկեր, հատոր 24 (ռուսերեն)։

Վ. Ի. ԼԵՆԻՆ — ՌԿ(բ)Պ 1920 թ. մարտի

29-ից ապրիլի 5-ը կայացած 9-րդ համագումարում, Կենտրոնական Կոմիտեի զեկուցումը: Երկեր, հատոր 25 (ռուսերեն):

Վ. Ի. ԼԵՆԻՆ — Վելիկոռուսների ազգային հպարտության մասին: Երկեր, հատոր 18 (ռուսերեն):

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — Կարմիր Բանակի երեք առանձնահատկությունների մասին: Պարտ. հրատ, 1938 թ. (հայերեն):

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ ճառ արտասանված 1935 թ. մայիսի 4-ին, Կարմիր Բանակի Ակադեմիականների շրջանավարտին, Քաղհրատ, 1940 թ. (հայերեն):

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — Զեկուցում ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում: Քաղհրատ, 1939 թ. (հայերեն):

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ — Ընկ. Իվանովի նամակը և ընկ. Ստալինի պատասխանը: Պարտ. հրատ, 1938 թ. (հայերեն):

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ Կառավարության արտաքին քաղաքականությունը: Զեկուցում 1940 թ. մարտի 29-ին ՍՍՌՄ Գերագույն Սովետի 6-րդ սեսսիային: Քաղհրատ, 1940 թ. (հայերեն):

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ . Սովետական Միության արտաքին քաղաքականությունը:



Զեկուցում 1940 թ. օգոստոսի մեկին, ՍՍՌՄ Գերագույն Սովետի 7-րդ սեսսիային: «Պարտաշխատող» ամսագիր № 8, 1940 թ. (հայերեն):

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ Ստալինը և Կարմիր Բանակը: Պետհրատ, 1935 թ. (հայերեն):

Կ. Ե. ՎՈՐՈՇԻԼՈՎ Ճառ ՀամԿ(բ)Պ 18-րդ համագումարում: Քաղհրատ, 1939 թ (հայերեն):

Ս. ՏԻՄՈՇԵՆԿՈ Գնահատելի նախաձեռնություն: «Պրավդա», 1940 թ. դեկտեմբերի 13:

Սեմյոն Կոնստանտինովիչ Տիմոշենկո: ՍՍՌՄ Պաշտպանության ժողովրդական կոմիսար, Սովետական Միության մարշալ և Սովետական Միության հերոս (համառոտ կենսագրություն): Վոյենիզդատ, 1940 թ. (ռուսերեն):

Մարտական ուսուցման դպրոցը: ՍՍՌՄ Պաշտպանության ժողովրդական կոմիսար, Սովետական Միության հերոս և մարշալ, Ս. Կ. Տիմոշենկոն Մոսկովյան, Արևմտյան, Կիևյան, Լենինգրադի ռազմական օկրուգների տակտիկական պարապմունքներին: (Վոյենիզդատ, 1940 թ. ռուսերեն):

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ Կարմիր Բանակի և Ռազմա-Ծովային նավատորմի քաղ. աշ-

խատողների դերը և խնդիրները: «Կոմսոմոլսկայա Պրավդա», 1940 թ. նոյեմբերի 30, կամ «Կրասնայա Զվեզդա» 1940 թ. նոյեմբերի 30:

Ե. ՅԱՐՈՍԼԱՎՍԿԻ Լենին և Ստալինը սոցիալիստական հայրենիքի պաշտպանության մասին: «Պրավդա» 1941 թ. հունվարի 21:

Ա. Ս. ՇՉԵՐԲԱԿՈՎ Զեկուցում Մեծ թատրոնում, Լենինի մահվան 17-րդ տարեդարձին նվիրված 1941 թ. հունվարի 21-ի հանդիսավոր սգո նիստում: «Սովետ. Հայաստան» թերթ, 1941 թ. հունվարի 24:

Ն. ՖՐԵՆԿԵԼ Լենինը և Կարմիր Բանակը: Վոյենիզդատ, 1939 թ. (ռուսերեն):

Է. ԳԵՆԿԻՆԱ Պայքարը Ցարիցինի համար 1918 թվին: Պոլիտիզդատ, 1940 թ. (ռուսերեն):

Պ. ԴԵՐԿԱՉ Թիկունքի բանվորների աշխատանքային հերոսությունը և անձնազոհությունը քաղաքացիական կռիվների տարիներին: «Իստորիչեսկի ժուռնալ» № 7 1940 թ.:

Քաղաքացիական կռիվների հերոսները ՍՍՌՄ-ում. Չապաև, Շչորս, Լազո, Կոտովսկի, Ցարբիցիուս, Պարխոմենկո, Ռուդնեվ, Դունդիչ (Կարմիր բանակայինի



գրադարան), Պետհրատ, 1939 թ. (հայերեն):

Ս. ԲՈՐԻՍՈՎ.— Մ. Վ. Ֆրունզե, Համառոտ կենսագրական ակնարկ: Երկրորդ մշակված հրատարակություն, Վոյենիզդատ, 1940 թ. (ռուսերեն):

Սովետական հայրենասիրության փաստաթղթերը (Խասան լճի կռիվների օրերին), Վոյենիզդատ, 1939 թ. (ռուսերեն):

ՍԱՊՑԻՐՈՎ Ն. ԵՎ ԱՅԼՔ. Չբրուչից մինչև Լվով (Կարմիր Բանակայինի գրադարան), Վոյենիզդատ, 1940 թ. (ռուսերեն):

Մարտական էպիզոդներ: Խասան լճի կռիվների մասին հոդվածների և նյութերի ժողովածու: Պետհրատ, 1939 թ. (հայերեն):

Սովետական Միության հերոսներ, օդաչու-բալթիկցիներ Պինչուկ, Բելոգուբով, Խառլամով, Գուբրիյ, Բորիսով, Ռակով. Կրոխալև,— Վոյենմորիզդատ, 1940 թ. (ռուսերեն):

Սպիտակ ֆինների հետ ունեցած կռիվների հերոսները: Ժողովածու առաջին, Պետհրատ, 1940 թ. (հայերեն):

Ե. ՎԱՐԳԱ.— Իմպերիալիստների պայքարը հանուն աշխարհի նոր վերաբաժանման: «Բոլշևիկ» № 9, 1940 թ.:

Ա. ԵՐՈՒՍԱԼԻՄՍԿԻ Երկրորդ իմպերիալիստական պատերազմի նպատակների մասին: «Բոլշևիկ» № 10, 1940 թ.:

Վ. ԿՈՒՐԴՅՈՒՄՈՎ Կարմիր Բանակի նոր կարգապահական կանոնադրություն: «Պրավդա» նոյեմբերի 16, 1940 թ.:

Ն. ՕՍԻՊՈՎ Կարմիր Բանակի մարտիկի դաստիարակության մեջ կիրառվելիք հարկադրական միջոցների մասին: «Կրասնայա Զվեզդա», 1940 թ. դեկտ. 25:

Ս. ՎԼԱՍՈՎ.— Սերը դեպի ռազմական գործը— «Պրավդա» դեկտ. 14, 1940 թ.:

Պատասխանատու խմբագիր՝
Դ. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ





ՅՎ. 3180, Պատվեր № 213, Տիրաժ՝ 10048
Ստորագրված է տպագրության 17/II 1941 թ.

Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետին կից թերթերի և ամսագրերի տպարան, Երևան